Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 18-19



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---

## ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

### ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԿԱՏԱՐՎՈՂ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐ-ԼՈՒՍԱՎՈՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ ԲԵԼՈՌՈՒՍԻԱՅԻ Կ(Բ)Պ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԵՐՁԱԿԱ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՀամԿ(բ)Պ Կենտկոմը որոշում է ընդունել «Բնակչության մեջ կատարվող մասսայական-քաղաքական և կուլտուր-լուսավորական աշխատանքի ասպարեզում Բելոռուսիայի Կ(բ)Պ պարտիական կազմակերպությունների մերձակա խնդիրների մասին»: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը իր որոշման մեջ մատնանշել է, որ Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմի, մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների կարևորագույն խնդիրներից մեկն է՝ մասսայական-քաղաքական աշխատանք ծավալել բնակչության մեջ, վերականգնել կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքը, կազմակերպել պարտիական, ու-*

վեստական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմերի և ինտելիգենցիայի գաղափարական-քաղաքական դաստիարակությունը: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը նշել է, որ գերմանական օկուպացիայից ազատագրված Բելոռուսական ՍՍՌ-ի շրջաններում դանդաղ է ծավալվում մասսայական-քաղաքական և կուլտուր-լուսավորական աշխատանքը բնակչության մեջ, ինչպես նաև պարտիական կազմերի և ինտելիգենցիայի գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու աշխատանքը:

Գտնելով որ ազատագրված շրջանների բնակչությանը ճիշտ և ժամանակին քաղաքական ինֆորմացիա տալը կարևորագույն պայմանն է գերմանացիների ավերած տնտեսությունը վերականգնելու նպատակով աշխատավորներին հաջողությամբ մոբիլիզացնելու և ֆաշիստական օկուպացիայի հետեվանքներն արագորեն լիկվիդացնելու համար, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը առաջարկեց Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին, մարզկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին՝ կազմակերպել ամենուրեք բնակչության ծանոթացումը Կարմիր Բանակի աչքի ընկնող հաղթանակների և ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Միության մղած պայքարի



հիմնական էտապների հետ: Հաշվի առնելով, որ Բելոռուսական բնակչությունը 3 տարի զուրկ էր սովետական ճշմարտացի ինֆորմացիայից և զգում էր ֆաշիստական ստահոդ պրոպագանդայի ներգործությունը, Բելոռուսիայի Կ(բ)Պ պարտիական կազմակերպությունները, ասված է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ, պետք է ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում լայնորեն օգտագործեն բելոռուսական ժողովրդի դեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների գործած արյունալի ոճիրների փաստերը, հայտնի դարձնեն օկուպանտների այդ ոճիրները ամբողջ բնակչությանը, մերկացնեն ՍՍՌՄ-ի ժողովուրդներին ստրկացնելու և բնաջնջելու գերմանական ավազակային քաղաքականությունը, մասսաներում ատելություն հրահրեն դեպի թշնամին: Պարտիական կազմակերպությունները պարտավոր են անդուլ կերպով բարձրացնել աշխատավորների քաղաքական ակտիվությունը և նրանց ռևոլյուցիոն զգաստությունը, ժամանակին բացահայտել և կասեցնել թշնամու գործակալության ավերիչ գործունեությունը և նրա տարածած ստահոդ, պրովոկացիոն լուրերը: Բելոռուսիայի պարտիական կազմակերպությունների հատուկ

ուշադրությունը հրավիրելով բնակչության մեջ աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ սոցիալիստական վերաբերմունք պատվաստելու գործին, պետական կարգապահության ամրապնդմանը, գերմանական օկուպանտների կողմից պատվաստված մասնավոր-սեփականատիրական, հակակոլխոզային և հակապետական սովորամադրությունների հաղթահարմանը, Համ. Կ(բ)Պ Կենտկոմը մատնանշեց, որ Բելոռուսիայի պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրն է ռեսպուբլիկայի աշխատավորներին մոբիլիզացնել օգնություն ցույց տալու Կարմիր Բանակին՝ գերմանա-ֆաշիստական զավթիչներին լիովին ջախջախելու գործում, արագորեն վերականգնելու ժողովրդական տնտեսությունը և ամեն կերպ ամրացնելու կոլխոզային կարգերը:

Ազատագրված շրջանների բնակչության մեջ մասսայական-քաղաքական աշխատանքը ամեն կերպ ուժեղացնելու նպատակով Համ. Կ(բ)Պ Կենտկոմը առաջարկեց Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին, մարզկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին կից զեկուցողների խմբեր կազմակերպել գլխավոր պարտիական, սովետական, պրոֆմիութենական, կոմերիտական աշխատողներից և ինտելի-



գենցիայի լավագույն մասից. կազմակերպել նրանց ելույթները բնակչության առջև՝ երկրի ռազմա-քաղաքական և միջազգային դրությանը նվիրված զեկուցումներով ու զրույցներով, այն հաշվով, որ յուրաքանչյուր ձեռնարկության մեջ և յուրաքանչյուր գյուղում ապահովված լինի քաղաքական զեկուցման կամ զրույցի կազմակերպումը ամսական առնվազն մեկ անգամ. մարզերում սիստեմատիկաբար անցկացնել շրջանային պրոպագանդիստական աշխատողների սեմինարներ՝ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի կազմակերպման և բովանդակության հարցերի շուրջը, ինչպես նաև ագիտատորների սեմինարներ, որտեղ ագիտատորներին հրահանգներ տալ Սովետական Միության Հայրենական պատերազմի հիմնական էտապների, ռեսպուբլիկայում տնտեսության ու կուլտուրան վերականգնելու հարցերի և բնակչության մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքի բովանդակության ու մեթոդների մասին: Բելոռուսիայի մեջ մտցնել ինտելիգենցիայի շրջանային ժողովների հրավիրումը, ուր քաղաքական զեկուցումներ. ինտելիգենցիայի համար կազմակերպել մարքսիստական-լենինյան թեորիայի հար-

ցերին նվիրված դասախոսություններ և կոնսուլտացիաներ։

Ռեսպուբլիկական, մարզային և շրջանային թերթերը բնակչության մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքի իսկական կենտրոններ դարձնելու նպատակով, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին առաջարկեց ընտրել քաղաքականապես պատրաստված և ժուռնալիստական աշխատանքին ընդունակ ընկերներ՝ որպես թերթերի խմբագիրներ և խմբագրությունների քարտուղարներ աշխատելու համար. ռեսպուբլիկական և մարզային թերթերի խմբագրություններին կից կազմակերպել միամսյա պրակտիկա՝ շրջանային թերթերի խմբագիրներ ու խմբագրությունների քարտուղարներ պատրաստելու և վերապատրաստելու համար. Բելոռուսական պետական համալսարանին կից ստեղծել ժուռնալիստիկայի ֆակուլտետ՝ մամուլի որակյալ աշխատողներ պատրաստելու համար. Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմի, մարզկոմների, շրջկոմների բյուրոներում լսել թերթերի աշխատանքի պլաններն ու թերթերի խմբագիրների հաշվետվությունները և պրակտիկայի մեջ մտցնել մարզկոմների քարտուղարների հաշվետվությունները Բելոռու-



սիայի Կ(բ)Պ Կենտկոմի բյուրոյում, իսկ պարբերաբար մարզկոմների բյուրոներում՝ պարբերաբար շրջկոմների քարտուղարների հաշվետվությունները թերթերի ղեկավարման մասին։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմի ու մարզկոմների պրոպագանդայի և ագիտացիայի բաժիններին պարտավորեցրեց օրական հսկել թերթերի բովանդակությանը, ընդհանրացնել նրանց դրական փորձը և բացահայտել թերությունները, ամսական 1—1½ ամիսը մի անգամ տեսություններ և նամակներ ուղարկել թերթերի խմբագրություններին թերթերի բովանդակության և ձևավորման մասին, իսկ ռեսպուբլիկական և մարզային թերթերին պարտավորեցնել սիստեմատիկաբար զետեղել շրջանային թերթերի տեսություններ։

Պարտիական, սովետական, պրոֆմիութենական, կոմերիտական կադրերի և ինտելիգենցիայի մարքսիստական-լենինյան պատրաստման ու վերապատրաստման գործը ծավալելու և բարելավելու նպատակով, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին առաջարկեց կազմակերպել բոլշևիկյան պարտիայի պատմության և թեո-

բիայի ինքնուրույն ուսումնասիրումը պարտիական ու սովետական կադրերի կողմից, վերակենդանացնել դասախոսությունների կազմակերպումը մարքսիստական-լենինյան թեորիան ուսումնասիրողներին օգնելու նպատակով, և կոնսուլտացիաներ անցկացնել ՀամԿ(բ)Պ պատմության, էկոնոմիկայի, ՍՍՀՄ և Բելոռուսական ՍՍՌ-ի պատմության, փիլիսոփայության ու գրականության հարցերի շուրջը, Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին կից, պարտիայի շրջկոմների ու քաղկոմների քարտուղարների և կոմերիտմիության մարզկոմների ու քաղկոմների քարտուղարների պատրաստման ու վերապատրաստման համար կազմակերպել ռեսպուբլիկական պարտիական միամյա դպրոց, ինչպես նաև պրոպագանդիստների միամյա դպրոց՝ լրացուցիչ բաժնով: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին թույլատրեց կազմակերպել մարզային 6-ամսյա դասընթացներ՝ ստորին պարտիական կազմակերպությունների քարտուղարներ, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներ, Փաբրիկա-գործարանային կոմիտեների և գյուղսովետների կոմունիստ նախագահներ պատրաստելու համար, շրջանային կենտրոններում պար-



տիական, սովետական, պրոֆմիութենական և կոմերիտական կադրերի միջին օղակի համար ՀամԿ(բ)Պ Կենտկոմն առաջարկեց կազմակերպել 6—8 ամսյա շրջանային պարտիական գիշերային դպրոցներ, որտեղ պետք է ուսումնասիրվեն «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը», ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին» գիրքը, երկրորդի քաղաքական քարտեզը և պարտիական ու սովետական շինարարության հարցերը: ՀամԿ(բ)Պ Կենտկոմն առաջարկեց գյուղական սկզբնական պարտիական կազմակերպություններին կից, պարտիական-սովետական կադրերի ստորին օղակի համար, կազմակերպել ուսման 3—4 ամսվա տևողությամբ քաղդպրոցներ, որտեղ պետք է կազմակերպվի ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրումը (ըստ հիմնական էտապների) և ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին» գրքի ուսումնասիրումը: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը առաջարկեց այդ քաղդպրոցների ղեկավարումը հանձնել պարտիայի շրջկոմների հաստիքային պրոպագանդիստներին: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը առաջարկեց Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին կից պրոպա-

դասախոսների դասընթացներում ղեկավարներ պատրաստել շրջանային պարտիական դպրոցների և գյուղական քաղդպրոցների համար։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմն առաջարկեց նաև Մինսկում վերականգնել Պարտիական լուսավորության ռեսպուբլիկական տունը։

Երիտասարդության մեջ քաղաքական և կուլտուր-լուսավորական աշխատանքը ծավալելու համար, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին, մարզկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին առաջարկեց միջոցներ ձեռք առնել կոմերիտական կազմակերպությունների աշխատանքն ուժեղացնելու համար, բարձրացնել նրանց գաղափարական ազդեցությունը երիտասարդության լայն մասսաների վրա, և հասնել այն բանին, որ նրանք ակտիվ մասնակցություն ունենան գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից ավերված տնտեսությունը վերականգնելու աշխատանքում, ինչպես նաև կոլխոզների կազմակերպման ու տնտեսական ամրապնդման և դպրոցների ու մանկատների աշխատանքի վերականգնման ու կանոնավորման գործում, ապահովել մասսայական կուլտուր-լուսավորական աշխատանքի լայն ծավալումը երիտասարդության մեջ։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը թույ-



լատրեց Բելոռուսիայում բելոռուսերեն և ռուսերեն լեզուներով հրատարակել երիտասարդական և մանկական թերթ։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմն առաջարկեց միջոցներ ձեռք առնել արագորեն վերականգնելու պրոֆեսիոնալ միությունների մարզային, ֆաբրիկա-գործարանային ու տեղական կոմիտեները և մատնանշեց որ ռեսպուբլիկայի պրոֆմիութենական կազմակերպությունների առաջնակարգ խնդիրներն են՝ բանվորներին, ինժեներներին, տեխնիկներին և ծառայողներին ակտիվ աշխատանքի ներգրավել գերմանական օկուպանտների կողմից ավերված տնտեսությունը և կուլտուր-կենցաղային հիմնարկները վերականգնելու ասպարեզում, ամեն կերպ զարգացնել սոցիալիստական մրցությունը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը և բանվորներին ու ծառայողներին պատվաստել սոցիալիստական վերաբերմունք դեպի աշխատանքը։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին, մարզկոմներին, շրջկոմներին և քաղկոմներին պարտավորեցրեց ապահովել պրոֆմիութենական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարումը և նրանց գործնական օգնություն ցույց տալ, վերականգնել ակումբների աշխատանքը Բելոռուսիայի

ձեռնարկություններում և քաղաքներում։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը նաև պարտավորեցրեց վերականգնել քաղլուսավորական հիմնարկների աշխատանքը և անհետաձգելի վերականգնման պլաններում նախատեսել խրճիթ-ընթերցարանների, դպրոցների, կուլտուրայի շրջանային տների ու ժողովրդական ստեղծագործության մարզային տների վերանորոգումը և կահավորումը. ապահովել յուրաքանչյուր խրճիթ-ընթերցարան կենտրոնական թերթերով՝ «Պրավդայով» կամ «Իզվեստիայով», «Սոցիալիստիչեսկոյե զեմլեդելիե» թերթով և «Սպուտնիկ ագիտատորա», «Կրեստյանկա» ժուռնալներով. կազմակերպել տեղական ռադիո-հաղորդման քաղաքային և շրջանային խմբագրություններ. վերականգնել կինո-թատրոնները Բելոռուսական ՍՍՌ-ի քաղաքներում ու շրջանային կենտրոններում. մինչև ուսումնական տարվա սկիզբը ռեսպուբլիկայի բոլոր ազատագրված շրջաններում վերականգնել նաև տարրական, 7-ամյա ու միջնակարգ դպրոցների ցանցը, նորոգման ենթարկել դպրոցական շենքերը և վերականգնել ու վերանորոգել մանկատների, ինտերնատների, մանկապարտեզների ու քաղ-լուսավորական հիմնարկների շենքերը։



ՀամԿ(բ)Պ Կենտկոմը պարտավորեցրեց մինչև 1944—1945 ուսումնական տարին սկսելը միամսյա դասընթացներ կազմակերպել նորից սովետական դպրոցում աշխատելու վերադարձող բոլոր ուսուցիչների համար և առաջարկեց Բելոռուսիայի Կ(բ)Պ Կենտկոմին, մարզկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին՝ ուսուցիչների համար առաջիկա ամառային մեկ ամսյա կազմակերպել ընդհանուր քաղաքական թեմաներին նվիրված դասախոսություններ ու զեկուցումներ, ինչպես նաև կազմակերպել քաղաքական խմբակներ՝ ուսուցիչների կողմից մարքսիստական-լենինյան թեորիան ուսումնասիրելու համար։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՍՍՌՄ մի շարք ժողկոմատներին և ռեսպուբլիկական հիմնարկներին պարտավորեցրեց օգնություն ցույց տալ Բելոռուսական ՍՍՌ-ին՝ ռեսպուբլիկայի կուլտուր-լուսավորական հիմնարկները վերականգնելու գործում։

---

# ԿՅԱՆՔԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԵՐԿՐԻ ՎՐԱ

Այն հարցը, թե ինչպե՞ս առաջին անգամ երկրի վրա գոյացել են կենդանի էակներ, միշտ զբաղեցրել է մարդկային միտքը՝ դեռ հնագույն ժամանակներից սկսած:

Հին ժամանակներում մարդիկ կարծում էին, որ մանր կենդանի էակներն իրենց նմաններից չեն ծնվում, չեն առաջանում սովորական բազմացման եղանակով, այլ գոյանում են իրենք իրենց: Ենթադրում էին, որ նրանց առաջացումը տեղի է ունենում ինքնաբերաբար:

Երբ ափսեի մեջ դրված մսի կտորի վրա գոյանում էին «որդեր», որոնք շրջապատում չկային, երբ մարդու մարմնի մեջ առաջանում էին ճիճուներ, որոնք ոչ մի կերպ արտաքին աշխարհից փոխանցվել այնտեղ չէին կարող, ապա այդ բանն ստիպում էր ենթադրել, որ կյանքը կարող է առաջանալ նեխվող նյութերից ինքնաբերաբար:



Սակայն, որքան մարդը լավ ուսումնասիրեց իրեն շրջապատող բնությունը, այնքան ավելի պարզվեց, որ ինքնագոյացման փաստը գոյություն չունի, որ կենդանի էակները միշտ ծնվում են միայն իրենց նմաններից:

Ինքնագոյացման տեսության առաջին հարվածը հասցրեց գիտնական Ռեդին: Հասարակ փորձով նա ապացուցեց, որ մսի վրա գոյացող սպիտակավուն որդերը, ոչ թե որդեր են, այլ ճանճի թրթուրներ՝ առաջացած մսի վրա ճանճերի թողած ձվիկներից: Ապացուցեց, որ առհասարակ նեխվող նյութերը իրենցից ներկայացնում են միայն որդերի և մյուս կենդանի էակների սննդանյութը և բույնը:

Օրգանիզմների ինքնագոյացման անհնարինության հարցը վերջնականապես լուծեց Պաստյորը: Նա ապացուցեց, որ նույնիսկ ամենամանր ու հասարակ օրգանիզմները (բակտերիաները) անկենդան նյութից չեն առաջանում, այլ բարձր կենդանիների և բույսերի նման ունեն իրենց նախնիները և առաջանում են նրանցից՝ բազմացման միջոցով: Նա մա[illegible] որ [illegible] միկրոօրգանիզմները առա[illegible] են ոչ թե նեխման պրոցեսում, [illegible]նդհակառակը, նեխումն

ինքը հետևանք է մանրէների գոյության, որոնք գալիս են օդի միջոցով, կամ այլ ճանապարհով:

Պաստյորից հետո մի շարք գիտնականներ պնդում էին, որ եթե կենդանի էակն առաջանում է կենդանի էակից և կյանքը միանգամից չի գոյանում, ապա նշանակում է, որ կյանքը գոյություն ունի հավիտենապես և նույնքան հին է, որքան աշխարհն ինքը:

Բայց որովհետև մեր երկիրը, անջատվելով արևից, երկար ժամանակ գտնվում էր շիկացած վիճակում և այդ ժամանակ նրա վրա կենդանի էակներ գոյություն ունենալ չէին կարող, այդ պատճառով ենթադրում էին, որ կյանքը, մանրագույն կենդանի էակների (միկրոօրգանիզմների) ձևով երկրի վրա փոխադրվել է,— մետեորիտների միջոցով,— մյուս մոլորակներից, երկնային մարմիններից, որտեղ նրանք արդեն գոյություն են ունեցել:

Կյանքի հավիտենական գոյության և կենդանի էակների, տիեզերական տարածության միջոցով, փոխադրված լինելու հարցն անհամոզական է:

Մետեորիտներն երկրի վրա ընկնում են վիթխարի արագությամբ և խփվելով երկ-



րային մթնոլորտի մեջ, այնպիսի ուժեղ շփման մեջ են մտնում օդի հետ, որ նրանց մակերևույթը շիկանում է: Այս պատճառով ժողովուրդը նրանց անվանում է «վայր ընկնող աստղեր»: Եթե նույնիսկ այդպիսի մետեորիտների վրա լինեն կենդանի միկրոօրգանիզմներ, ապա նրանք պետք է ոչնչանան, երբ մետեորիտի մակերեսը շիկանա երկնային մթնոլորտում: Բացի այդ, երկրի մթնոլորտից դուրս ուլտրամանուշակագույն ճառագայթները մի քանի րոպեի ընթացքում սպանում են բակտերիաներին, որովհետև այդ ճառագայթների ազդեցության տակ սպիտակուցային նյութերը քայքայվում են: Հետևապես, կենսունակ սաղմերը ոչ մի տեղից մեր երկիրը բերվել չէին կարող: Այսպիսով, երկու ենթադրություն էլ,— ինքնագոյացման հարցը և կյանքի հավիտենականության թեորիան,— միանգամայն տապալվել են և դեն շպրտվել գիտության կողմից:

Մեր երկրային կյանքը երբևէ պետք է անպայման առաջանար մեր մոլորակի վրա և պիտի առաջանար ո՛չ թե աստվածագործության կամ ինքնագոյացման որևէ անակնկալ ճանապարհով, այլ երկար պատ-

մական պրոցեսում, անկենդան նյութերը կյանքի հիմնական հատկություններով օժտված նյութերի վերածվելու միջոցով:

Անցնելով կյանքի սկզբնական ծագման հարցին, մենք ամենից առաջ պետք է պարզաբանենք, թե ինչով է տարբերվում կենդանին ոչ կենդանուց: Սովորական պատկերացումով կենդանի համարվում է նա, ով կարողանում է ինքնուրույն կերպով շարժվել: Սակայն բույսերն էլ կենդանի էակներ են, բայց նրանք, փոքր բացառությամբ, անընդունակ են ինքնուրույն շարժումների: Եվ ընդհակառակը, եթե ազոտային թթվուտով թթվեցրած ջրի մեջ մի կաթիլ սնդիկ գցենք, ապա բաժակի հատակում սնդիկը կսկսի շարժվել, պտտվել, թեև կենդանի էակ չի համարվում:

Այսպիսով, շարժումը դեռ հիմնական տարբերիչ չի հանդիսանում կենդանի և ոչ կենդանի մարմինների համար: Հիմնական տարբերիչն այն բարդ երևույթն է, որը կոչվում է **նյութերի փոխանակություն**, և հատուկ է միայն կենդանի էակներին:

Նյութերի փոխանակության պրոցեսի շնորհիվ օրգանիզմը գտնվում է մշտական փոփոխության մեջ: Ընդունված ու մարսված նյութից գոյանում են բարդ բաղա-



դրությամբ նյութեր, որոնք յուրացվում են մեր օրգանիզմի կողմից, այսինքն՝ դառնում են մեր մարմնի բաղկացուցիչ մասը: Դրանցից էլ կազմվում են մեր մկանները, ոսկորները, նյարդերը, ճարպային հյուսվածքները և այլն: Այնուհետև մարմնի մեջ այդ բարդ նյութերն սկսում են քայքայվել: Քայքայված նյութերը մարմնից դուրս են գալիս որպես ածխաթթու գազ (որն ստացվում է երկու էլեմենտներից՝ ածխածնից և օդի թթվածնից) և որպես մեզի ու քրտինքի բաղադրության մեջ մտնող նյութեր: Նյութերի փոխանակության ընթացքում միաժամանակ տեղի է ունենում և նյութերի քայքայում և քիմիական բարդ միացությունների նոր գոյացում: Կենդանի էակները շարունակ նորոգում են իրենց մարմնի բաղադրությունը:

Գիտնականները կենդանական ու բուսական օրգանիզմների նյութերի բաղադրության մեջ գտել են նույն տարրերը, ինչ տարրերից կազմված են բնության ոչ կենդանի մարմինները (երկրի կեղևը, ջուրը, մթնոլորտը): Իրենց մարմինը կառուցելու ամբողջ նյութը կենդանի օրգանիզմները վերցնում են իրենց շրջապատող միջավայր

րից: Բայց կենդանի օրգանիզմում այդ տարրերը գոյացնում են շատ՝ այնպիսի քիմիական միացություններ, որոնք բնության մյուս մարմինների մեջ բոլորովին չեն հանդիպում. օրինակ՝ ածխաջրերը (օսլա, շաքար, բջջանյութ), ճարպերը և սպիտակուցները, որոնք կոչվում են «օրգանական միացություններ»:

Սպիտակուց անունը տալիս են այնպիսի նյութերի, որոնք իրենց բարդությամբ մոտ են սովորական ձվի սպիտակուցին: Մեծ քանակությամբ սպիտակուց պարունակում են օրինակ՝ զանազան կենդանիների միսը, բույսերի սերմերը, արյունը, մակարդված կաթը և այլն:

Բոլոր օրգանական նյութերի հիմքը կազմում է ածխածինը,— մի տարր, որն ունի մյուս նյութերի հետ միանալու մեծ ընդունակություն: Այդ մենք հեշտությամբ ենք նկատում, որպես սև ածուխ, կամ երբ ածխանում և այրվում են կենդանիների և բույսերի զանազան մասերը կամ նրանց արտադրանքը: Ածխածին է պարունակվում թե՛ մարդու և թե՛ կենդանի օրգանիզմի մեջ: Օրգանական նյութերի կազմի մեջ մտնում են նույնպես ջրածինը, թթվածինը, երբեմն ազոտը, ծծումբը, ֆոսֆորը, եր-



կաթը, մագնիումը, կալիումը:

Այսպիսով օրգանական նյութերը ածխածնի շատ թե քիչ չափով բարդ միացություններ են: Հին ժամանակներում ենթադրում էին, որ դրանք կարող են գոյանալ միմիայն կենդանի օրգանիզմում, հատուկ «կենսական ուժ»-ի ներգործությամբ: Սակայն 19-րդ դարում հաջողվեց պատրաստել միզանյութ: Սա մի օրգանական նյութ է, որը բնության մեջ գոյանում է միայն կենդանիների օրգանիզմում և մտնում է մեզի բաղադրության մեջ: Ներկայումս պատրաստվել են մեծ քանակությամբ ամենաբազմազան օրգանական նյութեր:

Այս փաստերը վճռական հարված հասցրին «կենսական ուժ»-ի վերաբերյալ պատկերացմանը: Դրանք պարզեցին, որ օրգանական նյութերի բարդությունն ու բազմազանությունը կախված է ածխածնի՝ միաժամանակ շատ ուրիշ քիմիական նյութերի միանալու ընդունակությունից: Քանի որ օրգանական միացություններ կարելի է պատրաստել լաբորատորիաներում՝ հանքային նյութերից, ապա նշանակում է, որ բնության մեջ դրանց գոյացումը նույնպես տեղի է ունեցել առանց ինչ որ գոյու-

թյուն չունեցող, ոչ նյութական «կենսական ուժ»-ի միջամտություն:

Օրգանական բոլոր միացությունների մեջ, ամենաբարդ ձևով կառուցված են սպիտակուցները: Չկա մի օրգանիզմ, որն իր կազմության մեջ սպիտակուց չպարունակի: Միայն այնտեղ, որտեղ կա սպիտակուց, կարող են տեղի ունենալ նյութերի փոխանակության այնպիսի երևույթներ, որոնք կենդանուն ոչ կենդանուց տարբերելու ամենակարևոր հատկանիշներն են կազմում: Էնգելսը «Անտի-Դյուրինգում» գրում է. «Կյանքը սպիտակուցային մարմինների գոյության ձևն է, իսկ գոյության այդ ձևն ըստ էության կայանում է այդ մարմինների քիմիական բաղկացուցիչ մասերի մշտական ինքնանորոգման մեջ»: Ապա այնուհետև, մի քանի տող ներքևում ավելացնում է. «Մեզ հայտնի ամենաստորին կենդանի էակներն իրենցից ներկայացնում են պարզ սպիտակուցային գնդիկներ, բայց չէ՞ որ դրանք արդեն դրսևորում են կյանքի բոլոր էական երևույթները»:

Սպիտակուցների կազմության մեջ մտնում են՝ ածխածինը, ազոտը, ջրածինը, թթվածինը և որոշ դեպքերում ծծումբը, ֆոսֆորը և երկաթը: Բույսերի օրգանիզ-



մում սպիտակուցները կազմվում են ավելի պարզ օրգանական նյութերից՝ ջրի մեջ լուծված աղերից, որոնք բույսերի մեջ են մտնում արմատների միջոցով և ածխածնից, որը բույսը իր տերևների միջոցով ստանում է օդի ածխաթթու գազից:

Կենդանիներն ի տարբերություն բույսերից, սննդի միջոցով ստանում են պատրաստի սպիտակուցը, որոնց հաշվին և կարող է գոյանալ նրանց մարմնի սպիտակուցը:

Ներկայումս գիտությունն արդեն մոտենում է սպիտակուցային միացությունների արհեստական ստացմանը: Առայժմ հաջողվել է ստանալ միայն, սպիտակուցների համեմատությամբ ավելի պարզ, ազոտային միացություններ՝ ամինոթթուներ: Օրգանական քիմիայի հաջողությունները լուծելու են նաև սպիտակուցների արհեստական ստացման հարցը: Սովետական մեծ գիտնական, ակադեմիկոս Բախը, վերջին տարիներում այդ բնագավառում հասել է հետաքրքիր արդյունքների:

Կենսական երևույթների յուրատեսակության ճիշտ ըմբռնումը տալիս է դիալեկտիկական մատերիալիզմը, որն այդ յուրահատկության մեջ տեսնում է ոչ թե գերբնական մի բան, այլ հենց բնության զար-

զացման արդյունքը, որտեղ ամեն ինչ, սկսած աստղային և մոլորակային սիստեմներից, գտնվում են մշտական փոփոխման մեջ: Կյանքը շարժվող նյութի գոյության հատուկ ձևն է: Այդ ձևն իր պատմական զարգացման պրոցեսում առաջանում է, որպես նյութի նոր որակ: Առաջին կենդանի էակներն առաջացել են անկենդան նյութից, բայց այդ նյութի երկարատև զարգացման հետևանքով, ընդ որում զարգացման ընթացքում առաջացել են նորանոր հատկություններ, նոր որակ: Այդ տեսակետից էլ մատերիալիստական գիտությունը մոտենում է երկրի վրա կյանքի նախնական գոյացման հարցին ու դեն շպրտում կենդանու օրգանիզմի մեջ գտնվող ինչ որ հատուկ «հոգու» միջամտության պատկերացումները:

Եթե կյանքը գոյություն չունի հավիտենականապես և նորից չի ծնվում ժամանակակից էպոխայում, ապա նշանակում է, որ նա պետք է առաջանար երկրի վրա այն ժամանակ, երբ դրա համար կային համապատասխան պայմաններ, որոնք ըստ երևույթին խիստ տարբեր են եղել ժամանակակից պայմաններից: Երբ մեր երկիրն անջատվել է արևից, ապա սկզբնական շրջա-



նում նա պետք է իրենից ներկայացներ մի շիկացած, գազային զանգված: Նրա ջերմությունն այդ ժամանակ հասնում էր հազարավոր աստիճանների: Այդքան բարձր ջերմաստիճանի մեջ քիմիական ոչ մի տեսակ միացություն հնարավոր չէր: Շիկացած վիճակում, նույնիսկ այնպիսի նյութ, ինչպիսին է ջրածինը, մնում է ազատ վիճակում և թթվածնի հետ չի առաջացնում ջրային գոլորշիներ: Միայն հարյուր միլիոնավոր տարիներ հետո է երկիրը սառել, այնքան որ նրա մթնոլորտում սկսել են գոյանալ ջրի գոլորշիներ: Երբ երկիրն սկսել էր սառչել, ածխածինը, որ սկզբում գտնվում է գազային վիճակում, պետք է շիկացած ածխի կտորտանքների նման թափվեր երկրի շիկացած միջուկի վրա: Մթնոլորտից թափված ածխածինը պետք է խառնվեր հրահեղուկ մետաղների, մասնավորապես երկաթի հետ, իսկ հետզհետե սառչելու ընթացքում պետք է նրանց հետ միասին գոյացներ քիմիական միացություններ՝ այսպես կոչված կարբիտներ:

Այսպիսով, երկրի սառչելու սկզբնական շրջանում, համարյա ամբողջ ածխածինը, մետաղների հետ միասին, գտնվում էր մեր մոլորակի շիկացած միջուկում: Այդ միջու-

կի վրա հետզհետե գոյացել է հնագույն լեռնահանքերի թանձր թաղանթը: Այդ ժամանակվա երկրի մթնոլորտը, ծածկված էր խիստ տաքացած ջրի գոլորշիներով:

Երկրի միջուկը պատող կարծր թաղանթը սկզբնական շրջանում բարակ և անկայուն էր: Երբ նա պատռվել է և շիկացած հրահեղուկ զանգվածները հոսել են դեպի երկրի մակերեսը, ապա նրանց մեջ եղած կարբիտները պետք է քիմիական միացություններ տային մթնոլորտի գազերի հետ: Այս պայմաններում, պետք է գոյանային առաջին օրգանական միացությունները:

Առաջին օրգանական միացությունները (ածխաջրածինները) տվել են ավելի բարդ օրգանական միացություններ: Ածխաջրածնի և խիստ տաքացած ջրային գոլորշու փոխազդեցությամբ, նրանց միացել է թթվածինը, որը մտնում էր գոլորշու կազմության մեջ:

Երկրի մթնոլորտում առաջին անգամ պետք է գոյանային այդպիսի միացություններ, որոնք շատ միլիարդավոր տարիներ հետո մտել են կենդանի սպիտակուցի կազմության մեջ:

Անցան միլիոնավոր տարիներ: Երկիրը շարունակում էր սառչել: Երբ երկրի ջեր-



մությունն իջավ 100 աստիճանից ցած, մթնոլորտի գոլորշիներն արդեն վերածվեցին հեղուկ ջրի, որը հեղեղել է մեր մոլորակի մակերեսը և նրա վրա գոյացրել եռացող ջրի օվկիանոս:

Գոլորշիներից գոյացած ջուրը մթնոլորտից կլանել է այնտեղ գտնվող ածխածնի միացությունները: Այդ իսկ պատճառով երկրի վրա առաջացած եռացող ծովերի մեջ արդեն լուծվել են ամենապարզ օրգանական նյութերը:

Ժամանակակից քիմիկոսներն իրենց լաբորատորիաներում կարող են վերարտադրել զանազան օրգանական միացություններ, սակայն այդ խիստ տարբերվում է այն պրոցեսներից, որոնք գոյացել են բնական պայմաններում: Բայց մենք ներկայումս ունենք փորձերի այնպիսի օրինակներ, որոնք մոտավորապես ցույց են տալիս այն պայմանները, որոնց մեջ օրգանական համապատասխան նյութերի գոյացումը կարող էր տեղի ունենալ բնական պայմաններում:

Գիտնական Բուտլերովը ֆորմալինի վրա կրաջրով ներգործելու միջոցով ստացավ շաքարաջուր. վերջինս շատ նման էր այն նյութին, որը շարունակաբար գոյա-

նում է կանաչ բույսերի օրգանիզմում և հսկայական նշանակություն ունի նրանց կենսական պրոցեսներում: Այնուհետև գիտությունն ստացավ մի լուծանյութ, որն իր հատկությամբ նման էր սպիտակուցային միացություններին և մոտիկ էր նրանց՝ իր բարդ կազմությամբ:

Այս փորձում հետաքրքիրն այն էր, որ օրգանական բարդ միացությունն այստեղ գոյացել էր առանց արհեստական ներգործության, ուղղակի օրգանական նյութի և ջրի ներգործությամբ՝ լույսի ազդեցության տակ, այսինքն այնպիսի պայմաններում, որոնք կարող են լինել նաև բնության մեջ:

Բարդ օրգանական միացությունների գոյացմանը հանգող այսպիսի պրոցեսները, պետք է ընթանային հնագույն ծովերի տաք ջրերում: Այս պրոցեսները տևել են միլիոնավոր տարիներ: Հավանաբար բարդ օրգանական միացությունների գոյացման ճանապարհին, որոնցից հետագայում առաջ են եկել կենդանի սպիտակուցները, շատ կարևոր մոմենտ էր նաև լուծանյութերի գոյացումը, որոնք չէին տարրալուծվել ջրի ամբողջ զանգվածի մեջ, այլ առանձնացել էին որպես զանազան նստվածքներ և այլն:



Այսպիսի նյութ է հանդիսանում նաև ժամանակակից սպիտակուցը: Մեր առջև հարց է ծագում, թե ինչո՞ւ ներկայումս մեր ջրային զանգվածներում, ամենապարզ միացություններից չեն գոյանում այնպիսի օրգանական նյութեր, որոնք հետագայում կարողանան նոր կյանքի առաջացման պատճառ հանդիսանալ:

Ներկայումս, երբ կյանքը երկրի վրա արդեն գոյություն ունի, օրգանական նյութերը խոնավ միջավայրում շատ շուտով քայքայվում են իրենց վրա ներգործող միկրոօրգանիզմների (բակտերիաների) ազդեցությամբ: Իսկ այն ժամանակներում, երբ երկրի վրա դեռ նոր էին գոյանում բարդ օրգանական միացությունները, միկրո-օրգանիզմները դեռ գոյություն չունեին:

Օրգանական նյութերը, որոնք այն ժամանակ գոյանում էին ավելի պարզ միացություններից, կարող էին կուտակվել առանց քայքայման մատնվելու: Նրանք միայն քիմիական փոխազդեցության էին ենթարկվում միմյանց և շրջապատող միջավայրի տարրերի հետ:

Ավելի բարդ օրգանական միացությունների գոյացման հետևանքով պետք է ստացվեին նաև իսկական սպիտակուցներ: Հենց այդ

ժամանակ էլ առաջին անգամ երկրի վրա առաջացել է այն նոր յուրահատուկ երևույթը, որը մենք անվանում ենք կյանք և որտեղ ամենաէական մոմենտը հանդիսանում է նյութերի մշտական փոխանակությունը շրջապատող բնության հետ:

*Թե ինչպիսի կազմություն ունեին նախնական օրգանիզմները, մենք չգիտենք: Հնարավոր է, որ մենք չենք կարողանա դրանք տեսնել նույնիսկ ամենաուժեղ մանրադիտակներով, որովհետև մեր մեջ ապրող օրգանիզմներում ևս կան այնպիսիները, որոնք անտեսանելի են նույնիսկ մանրադիտակով:*

ՀՐ. ԲԱՏԻԿՅԱՆ
(Բիոլոգիական գիտությունների թեկնածու)

---



## ՎԱՏԻԿԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*)

*Վատիկանը, վերջին ամիսների ընթացքում, արտաքին քաղաքական մեծ ակտիվություն է ցույց տալիս, որը չի կարող իր վրա չհրավիրել հասարակայնության ուշադրությունը: Հռոմի ազատագրումից ի վեր, Հռոմի պապը ամեն օր ընդունում է հսկայական թվով այցելուներ: Նա ընդունում է ամերիկական, ֆրանսիական, կանադական, լեհական և անգլիական զինվորներ, սպաներ, գեներալներ (Սոսնկովսկի, Անդերս և այլն), Միացյալ Նահանգներից, Անգլիայից, Իսպանիայից եկած եպիսկոպոսներ, նախկին դիվանագետներ (Բուլլիտ), մինիստրներ և այլն: Ստացվում է այնպիսի տպավորություն, որ կաթոլիկական եկեղեցու գլխավորի հիմնական գործունեությունը կենտրոնացած է արտաքին քաղաքականության բնագավառում:*

*Պատերազմը թևակոխել է իր վճռական փուլը, և Վատիկանը չի կարող չհաշվա-*

*) Այս հոդվածը թարգմանվել և տպագրվում է Կիրովականի շրջանի կապի բաժանմունքի աշխատակից ընկ. Վ. Մնացականյանի պահանջով:

-նալ, որ նրա հոտի ճնշող մասը, այս ծանր տարիներին, այլրող ատելությամբ է տոգորվել դեպի հիտլերյան չարագործները: Իտալիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Լեհաստանի և այլ երկրների կաթոլիկ բնակչությունը իր սեփական դառն փորձով համոզվել է, որ ֆաշիզմը մարդկության ամենադաժան թշնամին է, որը պետք է լիովին և անխնա արմատախիլ անել: Եվ այնուամենայնիվ, Վատիկանը ոչ միայն ոչ մի անգամ հանկանե հանվանե չի դատապարտել Հիտլերին, Գյորինգին, Հիմլերին և մասսայական սպանությունների, կողոպուտների, մարդկային կուլտուրայի ավերածությունների մյուս կազմակերպիչներին, այլ նույնիսկ կոչ է անում գթասրտության և առաջարկում է «ներել» հիտլերականներին: Լոնդոնի բնակիչների մեջ աշխույժ ռեակցիա է առաջ բերել Հռոմի պապի վերջին դիմումը, որով կոչ էր արվում մեծահոգաբար ներել գերմանացիներին՝ ինքնաթիռ-արկերով անգլիական քաղաքները ավազակաբար ռմբակոծելու համար: Ինչպես հայտնի է, այդ ռմբակոծությունները, իրենց կույր և անմիտ վայրագությամբ, առանձնահատուկ վրդովմունք են առաջ բերել Անգլիայում:



Այստեղից էլ հասկանալի են այն արձագանքները, որոնք առաջ եկան պապի դիմումի հետևանքով: Լոնդոնի մամուլը հրապարակեց ընթերցողների բազմաթիվ նամակներ, որոնք խիստ քննադատում էին պապի կոչը՝ հիտլերականներին գթասրտություն ցույց տալու մասին: Նամակների հեղինակները, այդ թվում նաև կաթոլիկները, դժգոհություն էին հայտնում ոչ միայն պապի այդ ելույթի առթիվ, այլև ընդհանրապես Վատիկանի ամբողջ արտաքին քաղաքականության առթիվ, նշելով, որ այդ քաղաքականությունը օգնում է ֆաշիստական զավթիչներին:

Շատ նամակներում միանգամայն ճիշտ նշվում էր, որ տվյալ հարցի առթիվ պապի ունեցած ելույթը պատահական չէ, որ դա ընդհակառակը, քաղաքական որոշ գծի արտահայտություն է: Դեռ 1943 թվի հունվարին Վատիկանի ռադիոն զրույց էր հաղորդել «արդարության, ճշմարտության և գթասրտության սկզբունքի վրա հիմնըված» հաշտության մասին: Այդ զրույցի մեջ ասված էր. «անհրաժեշտ է հասնել այնպիսի հաշտության, որ հաղթվողները չտուժեն հաղթողներից»: Նման հայտարարության իմաստը, որը հրապարակվել է

այնպիսի իրադրության մեջ, երբ հիտլերականների նվաճողական պլանների տապալումը արդեն անվիճելի փաստ է, միանգամայն պարզ է։

Վատիկանին կից դեսպաններ ունեն հետևյալ 14 երկրները՝ Արգենտինա, Բելգիա, Բրազիլիա, Իսպանիա, Պերու, Բոլիվիա, Չիլի, Գերմանիա, Կոլումբիա, Ֆրանսիա, Իտալիա, Ճապոնիա, Լեհաստան, Պորտուգալիա և դեսպանորդներ ունեն հետևյալ 25 երկրները՝ Անգլիա, Չինաստան, Հունգարիա, Լիբերիա, Մոնակո, Էյրե, Կուբա, Գվատեմալա, Սան-Սալվադոր, Սան-Մարինո, Էքվադոր, Ուրուգվայ, Սլովակիա, Լիտվա (!), Մալթայի միաբանությունը, Ռումինիա, Վենեսուելա, Ֆինլանդիա, Հայիթի, Նիկարագուա, Պանամա, Դոմինիկյան ռեսպուբլիկա, Կոստարիկա, Հոնդուրաս, Հարավսլավիա. բացի դրանից, այնտեղ կա պրեզիդենտ Ռուզվելտի անձնական ներկայացուցիչը։ Դժվար է ասել, թե ինչով են զբաղվում Սան-Մարինո, Մոնակո, Մալթայի նման պետությունների ներկայացուցիչները և Լիտվայից փախած ֆաշիստները, սակայն պետք է խոստովանել, որ Վատիկանը դիվանագիտական ավելի բազմազան կորպուս ունի, քան որևէ մեծ



տերություն, իսկ քանի որ այնտեղ գտնվում են պատերազմող երկրների ներկայացուցիչներ, ապա Վատիկանը հարմար տեղ է հաշտության ամեն տեսակ մանևրների համար։

Որքան ավելի դժվարանում է հիտլերականների դրությունը, որքան ավելի է մոտենում նրանց կատաստրոֆը, այնքան ավելի ակտիվ է դառնում Վատիկանի խաղաղասիրական քաղաքականությունը։ Այս տարվա հուլիս ամսին իսպանական «Ինֆորմասիոնես» թերթը առաջնորդող հոդված էր զետեղել, որի մեջ՝ հենվելով Վաշինգտոնից ստացված տեղեկությունների վրա՝ հաղորդում էր, թե «պապը նախազգուշացնում է անմիջապես կապիտուլյացիայի պահանջի հետ կապված վտանգի դեմ»։ Հուլիսի 25-ին Ռեյտեր գործակալությունը տվեց իր Հռոմի թղթակցի հաղորդագրությունը այն մասին, որ Վատիկանը պատրաստվում է իր վրա վերցնել Գերմանիայի հետ հաշտության նախնական բանակցություններ վարելու նախաձեռնությունը։ «Նյուս Ուիկ» շաբաթաթերթը օգոստոս ամսին, հենվելով Լոնդոնի լավ իրազեկ դիվանագետների վրա, հաղորդում էր, թե պապը վերսկսել է Գերմանիայի համար

կոմպրոմիսային հաշտություն ձեռք բերելու փորձերը։

Այն ժամանակ, երբ Վատիկանի այդ խաղաղարարական գործունեությունը իրականացվում է կուլիսների հետևում, պաշտոնապես արվում են հետևյալ տիպի հայտարարություններ.

> «Սուրբ աթոռը ներկա պատերազմի հենց սկզբից միշտ էլ խիստ չեզոքության դիրք է բռնել ժամանակակից զինված կոնֆլիկտի վերաբերմամբ»։

Սակայն այսպիսի պաշտոնական հայտարարությունները ամենևին չեն կարող հանդարտացնել այն շրջաններին, որոնք ուշադիր հետևում են պապի ու նրա մամուլի ելույթներին, որովհետև չեզոքությունը մարդասպանի ու նրա զոհի նկատմամբ ավելի քան տարօրինակ «չեզոքություն է»։

Այսպես, օրինակ, Միացյալ Նահանգներում, մի խումբ նախկին կաթոլիկ քահանաներ, որոնք հրատարակում են «Կոնվերտեդ Կաթոլիկ» ժուրնալը, վերջերս մի բրոշյուր են լույս ընծայել, որով ապացուցում են, թե Վատիկանի այսպես կոչված չեզոքությունը, սոսկ «ծխածածկույթ է», նպատակ ունենալով քողարկել Վատի-



կանի կապը, միավորված ազգերի թշնամիների հետ։

Ամերիկյան «Նյու-Յորք Հերալդ Տրիբյուն» թերթը, քննադատելով պապի «գթասրտության սկզբունքներով» հաշտություն կնքելու վերաբերյալ դեկլարացիայի հիմնական թեզիսը, հայտարարում է, որ այդպիսի ելույթը «կարող է դիտվել սոսկ որպես ոչ-չեզոք միջամտություն Հիտլերի օգտին» և, որ «դաշնակիցների շատ երկրներ պապի այդ ձայնը կգնահատեն հենց այդպես»։ «Նյու-Յորք Ուորլդ Տելեգրամ» թերթը, նույնպես խիստ քննադատելով պապի ելույթը, ընդգծում է, որ դա ըստ էության նացիստական պրոպագանդայի կրկնությունն է։ «Մենք կարծում ենք,— գրում էր թերթը,— որ ամերիկացիների մեծ մասը կվշտանա պապի այդ փորձից՝ հասնել պատերազմի վախճանին՝ առանց լիակատար հաղթանակի, որին դաշնակիցների կառավարությունները և ժողովուրդները ձգտում են ներկայումս, այն համարելով խաղաղության և ազատության երաշխիքը»։

Անգլիայի կրոնական կազմակերպություններից մեկը՝ «բողոքականների համայնքը» իր հատուկ ուղերձի մեջ, որ հրա-

պարակվել է այս տարվա սեպտեմբերի սկզբին, հիտլերականների նկատմամբ Վատիկանի «գթասրտության» կոչի առթիվ՝ հայտարարում է.

«Վատիկանի իսկական բնույթը մերկացվում է այն շնորհավորանքներով, որ պապը ուղարկել էր Հիտլերին՝ մահից նրա պատահմամբ փրկվելու առթիվ, ինքնաթիռ-արկերի վերաբերյալ պապի լռությամբ և նույնկալի թշնամուն ներելու կոչ անող պապի ուղերձով, մի թշնամի, որը շատ հազարավոր մարդկանց նետել է կրեմացիոն վառարանների մեջ, որ գլխում է Հարավային Անգլիայի բնակչության մասսայական սպանությունների և որ հրաձգություն է բաց արել Փարիզի Տիրամոր տաճարի վրա»:

«Բողոքականների համայնքը» այնուհետև ուշադրություն է դարձնում լեհական հարցում Վատիկանի խաղացած դերի վրա.

«Հռոմի կաթոլիկական պրելատները*) և մամուլը ջանասիրաբար փորձում են լեհական փափուկ հարցում գժտություն առաջ բերել Ռուսաստանի և մեր միջև և նրանք Վատիկանին միջամտության կոչ են անում»:

*) Բարձրաստիճան հոգևորականները: ԽՄԲ.

Վատիկանի բնութագրման համար ավելորդ չի լինի ավելացնել, որ նրա նշանավոր ներկայացուցիչները, ինչպես, օրինակ, եպիսկոպոս Գալլինան, իր ժամանակին եռանդուն կերպով պաշտպանում էին հիտլերականների կատինյան նողկալի պրովոկացիան և լեհական էմիգրանտական կառավարությանը: Ներկայումս Վատիկանի օրգան «Օսսերվատորե ռոմանոն», որը լույս է տեսնում Հռոմում, արձագանքել է Վարշավայի իրադարձությունների վերաբերյալ լեհական ռեակցիոն էմիգրանտների զրպարտիչ պրոպագանդային: Անգլիական «Ռեյնոլդս նյուս» թերթը բաց է անում Վատիկանի քաղաքականության քողը լեհական հարցում.

«Վատիկանի մամուլի պաշտոնական տոնը,— գրում է այդ թերթը,— ցույց է տալիս, որ պապը որոշել է Լեհաստանն իր համար ճակատամարտի դաշտ դարձնել Ռուսաստանի դեմ: Այդ որոշումն ընդունված է համապատասխան Վատիկանի ընդհանուր քաղաքականության, որի մեջ երևան է գալիս, առնվազն, մութ հաշիվ: Վատիկանի այդ քաղաքականության մեջ իշխում են ե-

րեք գլխավոր սկզբունք: Առաջին՝ Գերմանիայի հետ հաշտության բանակցություններ սկսելու անհրաժեշտությունը, որին հետևելու է հաշտության «ներողամիտ» պայմանագիր. երկրորդ՝ Լեհաստանը Եվրոպայի համար «բարոյական նեցուկ» դարձնելու ցանկությունը. երրորդ՝ ռուսների առաջխաղացումը ներկայացնել որպես Եվրոպայի վրա շարժվող բոլշևիզմի սպառնալիք»:

Այս նկատառումները, թերթի ասելով, բացատրում են, թե ինչու Վատիկանը գտնում է, որ «Գերմանիային չպետք է լիովին ջախջախել»:

Կաթոլիկական մի քանի թերթեր, ինչպես, օրինակ, «Կաթոլիկ հերալդ» (սրապի անգլիական արբեպա Գոդֆրեյի օրգանը) կամ Միացյալ Նահանգներում «Թեբլիդ» թերթը (մի թերթ, որը պաշտպանում է Փաշիստական կաթոլիկ քահանա Կոֆլինին), բացե ի բաց թշնամական են Միավորված ազգերի ընդհանուր գործին: Թեհրանի որոշումների թշնամական քննադատությունը և այդ թերթերի դրպարոնիչ կամպանիան դաշնակից տերությունների համագործակցության դեմ, բացահայտ-



րեն ուղղված էին հակահիտլերյան կոալիցիայի միասնությունը տապալելու կողմը:

Վատիկանի նման քաղաքականությունը իր արմատներն ունի նրա անցյալ ամբողջ գործունեության մեջ: Ինչպես հայտնի է, Փաշիզմը Իտալիայում իշխանությունն իր ձեռքը վերցնելու առաջին օրերից Վատիկանը բարեկամական հարաբերություններ հաստատեց նրա հետ: Պիոս 11-րդ պապը, ներկայիս Պիոս 12-րդ պապի նախորդը, ասել էր նույնիսկ, որ Մուսոլինին «նախախնամության կողմից ուղարկված մարդ է» և Մուսոլինիի տիրապետության առաջին իսկ օրից ձգտում էր բոլոր երկրների կաթոլիկներին մոբիլիզացնել նրան օգնելու համար:

1929 թվի փետրվարի 11-ին կնքված Լատերանի պայմանագիրը, որի նպատակն էր կարգավորել Փաշիստական պետության և Վատիկանի փոխհարաբերությունները, երկու կողմի համար շատ նպաստավոր գործարք էր: Մուսոլինին ընդունեց «Վատիկան քաղաք-պետության» անկախությունը և սուվերենությունը, կաթոլիկական եկեղեցու համար արտոնյալ դիրք հաստատեց Իտալիայում և Վատիկանին միանվագ վճարեց 750 միլիոն լիրա դրամով և մեկ մի-

մլրդ․ լիրա պետական արժեթղթերով: Վատիկանն իր հերթին դիկտատոր Մուսսոլինիի համար ապահովեց կաթոլիկական եկեղեցու պաշտպանությունը նրա ներքին ու արտաքին ամբողջ քաղաքականության մեջ:

Համաշխարհային ամբողջ պրոգրեսիվ մամուլն այդ պայմանագիրը գնահատեց, որպես Վատիկանի ու ֆաշիզմի բլոկ, որը ավարտում էր Վատիկանի կողմից՝ բուն Իտալիայում կաթոլիկական մի շարք կազմակերպություններում եղած օպոզիցիոն տարրերի հետապնդումը:

Վատիկանը, ինչպես հայտնի է, շատ մեծ ծառայություն մատուցեց գեներալ Ֆրանկոյին, որը Հիտլերի և Մուսսոլինիի օգնությամբ ապստամբություն բարձրացրեց Իսպանիայի դեմոկրատական ռեսպուբլիկական կառավարության դեմ: Իսպանիայում տեղի ունեցած քաղաքացիական պատերազմի ամբողջ ժամանակաշրջանում Վատիկանը օրհնություն էր ուղարկում գեներալ Ֆրանկոյին և նրա՝ ոչ միայն ռեսպուբլիկականներին, այլև կաթոլիկ այն քահանաներին, որոնք պաշտպանում էին ժողովրդական իշխանությունը Իսպանիայում: Ռեսպուբլիկական օրինական ռեժիմը ոչն-



չացնելուց հետո գեներալ Ֆրանկոն սպանեց ու տանջամահ արավ Իսպանիայի տասնյակ հազարավոր բանվորներ, գյուղացիներ ու ինտելիգենտներ՝ ռեսպուբլիկային կողմնակից լինելու համար: Իսպանական ֆաշիստները կոտորեցին շատ հազարավոր հավատացյալ կաթոլիկներ և հարյուրավոր կաթոլիկ քահանաներ: Մինչև այժմ էլ Ֆրանկոյի բանտերում և համակենտրոնացման ճամբարներում տասնյակ հազարավոր կալանավորների մեջ կան շատ հավատացյալ կաթոլիկներ, հարյուրավոր կաթոլիկ քահանաներ, սակայն Վատիկանը ոչ մի անգամ իր ձայնը չի բարձրացրել ի պաշտպանություն իսպանական ժողովրդի բախտակից զավակների:

Այդ քաղաքականությունը բացատրվում է նրանով, որ Վատիկանը գեներալ Ֆրանկոյի ֆաշիստական Իսպանիան համարում է «քրիստոնեական պետության» նախատիպը ետպատերազմյան ամբողջ Եվրոպայի համար:

Վատիկանը մեծ ծառայություն մատուցեց նաև Հիտլերին: Պապական նվիրակը Բեռլինում՝ կարդինալ Պաչելլին (ներկայիս Պիոս 12-րդ պապը) 1930 թվին կաթոլիկ եկեղեցուն առաջարկեց մերձենալ Հիտլերի

հետ և հող պատրաստել կաթոլիկների ու նացիոնալ-սոցիալիստների կոալիցիոն կառավարության համար։ Երբ Հիտլերը իշխանության գլուխն անցավ, Պաչելլին, որպես Վատիկանի պետական քարտուղար, կենտրոնի պարտիայի պարագլուխ պրելատ Կաասուին դիրեկտիվներ է տալիս՝ «հանդես չգալ Հիտլերի կառավարության դեմ նույնիսկ այն դեպքում, եթե այդ բանի համար հարկ լինի ցրել կենտրոնի պարտիան»։

Վատիկանի լիակատար, անսահմանափակ օժանդակությունը վայելում են և՛ Խորտիի ֆաշիստական ռեժիմը Հունգարիայում, և՛ Լեհաստանի բոլոր ֆաշիստական ու պրոֆաշիստական գործիչները (Սոսնկովսկին, Մատուշևսկին), և՛ գերմանական ֆաշիստների՝ Պետենի, Պավելիչի, Տիսոյի նման մարիոնետկաները և այլն։

Վատիկանի արտաքին քաղաքականության չարագուշակ ստվերը ընկել է համաշխարհային երկրորդ պատերազմի ծագման ամբողջ պատմության վրա։ Պիոս 12-րդ պապը, 1930 թվի մայիսին, եռանդուն կերպով նախապատրաստում էր Վատիկանի դրոշի տակ հրավիրել 5 տերությունների՝ Անգլիայի, Ֆրանսիայի, Իտա-



լիայի, Գերմանիայի ու Լեհաստանի կոնֆերանս։ Վատիկանի օրգան «Օսսերվատորե ռոմանոն» ագիտացիա մղելով հօգուտ այդ պետությունների միավորման և վախենալով հակահիտլերյան միջազգային համաձայնության հնարավորությունից, հակասովետական կատաղի կամպանիա ծավալեց։ Ինչպես հաղորդում էր անգլիական «Դեյլի հերալդ» թերթը, 1939 թ. հունիսի 5-ին «Վատիկանը մտահոգված էր անգլո-սովետական բանակցություններով, քանի որ նրա քաղաքականությունն ուղղված էր հակասովետական բլոկ ստեղծելու կողմը»։

Գլխավորելով Սովետական Միության դեմ ուղղված ամեն տեսակ «խաչակրաց արշավանքները», որոնք ձեռնարկվում էին շատ տարիների ընթացքում, Վատիկանը ծավալեց առանձնահատուկ ակտիվություն սովետա-գերմանական պատերազմի ժամանակաշրջանում՝ այդ բանի համար դիմելով թշնամու կողմից ժամանակավորապես գրավված սովետական շրջաններում գերմանական օկուպացիոն իշխանությունների, գեստապոյի և էսէսական զորամասերի օժանդակության։ Այսպես, «Ամերիկեն» ժուռնալը, 1943 թվի հունվարին, տպագրեց Յունայտեդ պրես գործակալության համի

Թղթակից Պակկարդի հաղորդագրությունը այն մասին, թե Վատիկանը ինչպես է աշխատում Սովետական Միության դեմ: Ահա թե ինչ կարելի է կարդալ այդ թղթակցության մեջ.

«Վատիկանի դիրքը Սովետական Միության նկատմամբ չի փոխվել, բոլշևիկյան ռևոլուցիայի սկզբից ի վեր: Վատիկանը պատրաստվում է կրոնական պրոպագանդայի կամպանիա անցկացնել Սովետական Միության մեջ: Վերջին 15 տարիների ընթացքում Վատիկանը գաղտնի կերպով քահանաներ է պատրաստել Ռուսաստանում աշխատելու համար: Բացի ռուսերեն, ուկրաիներեն և մյուս լեզուները սովորեցնելուց, նրանց հատկապես սովորեցնում էին, թե ինչպես պետք է պայքարել այն հերետիկոսական (!) գաղափարների դեմ, որ ռուս ժողովուրդը յուրացրել է վերջին 25 տարվա ընթացքում: Հռոմում իմ գտնվելու ժամանակ՝ ես իմացա, որ շատ քահանաներ արդեն գնացել էին, գերմանացիների կողմից օկուպացված, սովետական տերիտորիան: Գերմանացիները թույլատրել էին կաթոլիկ քահանանե-



րի մուտքը, հուսալով, որ նրանց կհաջողվի վերահսկողություն հաստատել ռուսների վրա և նրանց հաշտեցնել գերմանական օկուպացիայի հետ»:

Առանձնապես հետաքրքիր են՝ «ռուսների վրա վերահսկողություն հաստատելու և նրանց գերմանական օկուպացիայի հետ հաշտեցնելու» համար՝ կաթոլիկ քահանաներին օգտագործելու գերմանացիների հույսերը: Ինչպես հայտնի է, գերմանացիները, և նրանց հետ միասին նաև նրանց բարեկամները, չարաչար կերպով սխալվեցին:

Վատիկանի քաղաքականությունը և կաթոլիկական մամուլի շատ օրգանների բռնած դիրքը, բնականաբար և միանգամայն հասկանալի կերպով, դժգոհություն են առաջ բերում կաթոլիկների այն մասսաների մեջ, որոնք իրենց արյունն են թափում՝ հիտլերիզմի դեմ հաղթանակ տանելու համար: Չէ՞ որ թե՛ Ֆրանսիայում և թե՛ մյուս երկրներում շատ կաթոլիկներ, այդ թվում նաև եկեղեցականներ, մասնակցել են օկուպանտներին դիմադրող կազմակերպություններին: Լոնդոնում լույս տեսնող ֆրանսիական քրիստոնեական պրոֆմիությունների «Վոլոնտյոր» թերթը վեր-

ջերս մի հոդված է հրապարակել, որի մեջ սուր կերպով քննադատում է Վատիկանի և նրա օրգանների արտաքին քաղաքական գիծը։ «Վոլոնտյորը» նշում է, որ մամուլի և ոչ մի օրգան այնպես չի ծառայել Հիտլերի գործին, ինչպես «Կաթոլիկ Հերալդը»։ Թերթը նշում է, որ Ֆրանսիական եպիսկոպոսները, բացառությամբ Տուլուզի արքեպիսկոպոսից, «ոչ միայն չեն սահմանազատվել Պետենից, այլև ակտիվորեն պաշտպանում էին նրան», և թերթը եպիսկոպոսներին հակադրում է այն շարքային կաթոլիկներին ու քահանաներին, որոնք մասնակցել են հիտլերիզմի դեմ մղվող պայքարին։

Արտաքին քաղաքականության Ամերիկյան Ասոցիացիան վերջերս հրապարակած զեկուցման մեջ սպառիչ վերլուծության ենթարկելով Վատիկանի արտաքին քաղաքականությունը, նշում է, որ «Պապը չի պաշտպանում դեմոկրատիային» և որ պապականությունը «սերտ հարաբերություններ է պահպանում ֆաշիզմի հետ»։ Ասոցիացիան այստեղից հետևություն է անում, որ այդպիսի քաղաքականությունը Իտալիայում առաջ կբերի «աննախընթաց հակակղերականության» ժամանակաշրջան։



Արդարանո՞ւմ է արդյոք այս պրոգնոզը թե ոչ... Համենայն դեպս, ներկայումս անտարակուսելի է, որ Վատիկանի վարած քաղաքականությունը չի նպաստում նրա ազդեցության ու հեղինակության աճմանը՝ Եվրոպայի ու Ամերիկայի կաթոլիկական լայն շրջաններում։

Դ. ՊԵՏՐՈՎ

(«Վոյնա ի ռաբոչի կլաս» № 19)

---

> «Բոլշևիկները կուրս էին վերցրել ծավալել ռևոլյուցիան, տապալել ցարիզմը զինված ապստամբության միջոցով, հաստատել բանվոր դասակարգի հեգեմոնիան, մեկուսացնել կադետական բուրժուազիային, դաշինք կնքել գյուղացիության հետ, ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն ստեղծել բանվորների և գյուղացիների ներկայացուցիչներից, հաղթական վախճանի հասցնել ռևոլյուցիան:
>
> ՀամԿ(բ)Պ Պատմության համառոտ դասընթաց»:

## ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑԻ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ*)

### *Գլուխ* III

### 1. «ՄԵՆՇԵՎԻԿՆԵՐՆ ՈՒ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԸ ՌՈՒՍ-ՃԱՊՈՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ:

(1904—1907 թվականներ)

1. Ռուս-ճապոնական պատերազմը: Ռևոլյուցիոն շարժման հետագա վերելքը Ռուսաստանում: Գործադուլները Պետերբուրգում: Բանվորների ցույցը Պետերբուրգում: Բանվորների ցույցը ձմեռային պալատի մոտ 1905 թվականի հունվարի 9-ին: Ցույցի գնդակոծումը: Ռևոլյուցիայի սկսվելը:

*) *Սկիզբը տես* «Ա. Բ.» № 15-*ում*:



*ԼԵՆԻՆ Վ. Ի. — Մայիսի մեկը* 1904. *Երկեր, հատոր* 6, *էջ* 468—472:

*ԼԵՆԻՆ Վ. Ի. — Զեմստվոյին կամպանիան և* «Искра»*-ի պլանը*: 1904 *թ.: Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ.* I, *էջ* 830—845:

ЛЕНИН В. И. — Самодержавие и пролетариат. 1905 г. Соч. т. VII, стр. 26—34.

ЛЕНИН В. И. — О хороших демонстрациях пролетариев и плохих рассуждениях некоторых интеллигентов. 1905 г. Соч. т. VII, стр. 35—39.

ЛЕНИН В. И. — Падение Порт-Артура. 1905 г. Соч. т. VII, стр. 44—50.

*ԼԵՆԻՆ Վ. Ի. — Պետերբուրգի գործադուլը*. 1905. *Վ. Ի. Լենին,* «*Հունվարի* 9-*ը*» *ժողովածուի մեջ, էջ* 5—8: *ՀԿ(բ)Պ ԿԿ Անդրերկրկոմի հրատարակություն* 1926 *թ. էջ* 92:

ԼԵՆԻՆ Վ. Ի. Ռևոլյուցիայի սկիզբը Ռուսաստանում— 1905 թ.: Լենին և Ստալին— Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 126—129:

ԼԵՆԻՆ Վ. Ի. — Գապոն քահանան 1905. Վ. Ի. Լենին «Հունվարի 9-ը» ժողովածուի մեջ. էջ 26—28. ՀԿ(բ)Պ ԿԿ Ագիտբաժնի հրատարակություն 1926 թիվ, 92 էջ:

ЛЕНИН. В. И. — Первые уроки. 1905 г. Соч. т. VII. стр. 104—107.

ЛЕНИН В. И. — Европейский капитал и самодержавие. 1905. Соч. т. VII. стр. 175—180.

ЛЕНИН В. И. — Разгром. 1905 г. Соч. т. VII. стр. 335—338.

СТАЛИН И. В. — Рабочие Кавказа, пора отомстить! (Воззвание Кавказского союзного комитета РСДРП), 1905. В книге: Л. Берия «К вопросу об истории большевистских организаций в Закавказье», стр. 71—73. Госполитиздат. 1938 г., изд. 4-ое. 240 стр.
(Հայերեն հրատ. մեջ էջ 77—78, կրճատումներով).



2. Բանվորների հեղափոխական գործադուլները ու ցույցերը: Գյուղացիների ռևոլյուցիոն շարժման աճումը: Ապստամբություն «Պոտյոմկին» զրահանավի վրա:

ԼԵՆԻՆ Վ. Ի. Ռևոլյուցիոն օրեր: Վ. Ի. Լենին «Հունվարի 9-ը» ժողովածուի մեջ, էջ 12—83: ՀԿ(բ)Պ Կենտկոմի ագիտ. բաժնի հրատարակություն, 1926 թ. 92 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի. — Պրոլետարիատը և գյուղացիությունը, 1905. Լենին և Ստալին— Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 169—172:

ЛЕНИН В. И. — Первые шаги буржуазного предательства. 1905.
Соч. т. VII, стр. 352—357.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռևոլյուցիոն բանակը և ռևոլյուցիոն կառավարությունը— 1905: Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ. 2-րդ, էջ 317—326:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պրոլետարիատը կռվում է, բուրժուազիան գաղտագողի դեպի իշխանություն է սողում, 1905 թ. Երկեր, հատ. 8-րդ, էջ 184—195:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Բուլիգինյան դումայի բոյկոտը և ապստամբությունը: 1905 թ.

*Երկեր, հատ. 8-րդ, էջ 206—215։*

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.—«Ինչ պարզվեց» (Կովկասյան Միութենական կոմիտեի 1905 թվ. մարտի 26-ի թռուցիկը)։ Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում, էջ 77—78 (հատվածներ)։ Հայկուսհրատ, 1936 թ. 217 էջ։*

3. Տակտիկական տարաձայնությունները բոլշևիկների ու մենշևիկների միջև։ Պարտիայի 3-րդ համագումարը։ Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» գիրքը։ Մարքսիստական պարտիայի տակտիկական հիմքերը։

*ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Կենտրոնական Կոմիտեի դիմումը Կոմունիստների միությանը—1850 թ.։ Կարլ-Մարքս, Ընտիր երկեր երկու հատորում. հատոր 2-րդ, էջ 156—168։ Քաղ. գրակ. Պետ. հրատ. 1941 թ.*

*ՄԱՐՔՍ Կ.— Նամակ ԷՆԳԵԼՍԻՆ— 1856 թվի ապրիլի 16, Լոնդոն։ Կարլ*



*Մարքս. Ընտիր երկեր երկու հատորում, 2-րդ հատոր, էջ 428—430։ Քաղ. գրակ. Պետ. հրատ. 1941 թ.։*

ЛЕНИН В. И. — Рабочая и буржуазная демократия, 1905 г.
Соч. т. VII, стр. 63—69.

ЛЕНИН В. И. — Должны ли мы организовать революцию? 1905. Соч. т. VII, стр. 122—129.

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նոր խնդիրներն ու նոր ուժերը— 1905. Ընտիր երկեր, վեց հատորի մեջ. հատոր 2-րդ, էջ 447—457։*

*ԼԵՆԻՆ Ի. Վ.— Սոցիալ-դեմոկրատիան և ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը։ 1905. Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. 2-րդ, էջ 447—457։*

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն դեմոկրատական դիկտատուրան, 1905. Լենին— Ստալին, Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 136—145։ Կուսհրատ, 1937 թ. 1187 էջ։*

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— ՌՍԴԲՊ երրորդ համագումարը։ 1905։ Ժողովածու։ III բաժին. Ելույթներ համագումարում և բանա-*

ձևերի նախագծեր: էջ 134—186: Բաղ. գրակ. Պետ. հրատ. Երևան, 1941.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երրորդ համագումարը: 1905 թ. Ընտիր երկեր մեկ հատորի մեջ, հատ. 2-րդ, էջ 457, 466:

По поводу событий на Кавказе. Резолюция III с'езда РСДРП. 1905 г. В книге: ВКП(б) в резолюциях и решениях с'ездов, конференций и пленумов ЦК. Часть I, стр. 49. Госполитиздат. 1940 г. 728 стр.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երրորդ քայլը դեպի ետ, 1905 թ.: «Հոդվածներ և ճառեր պարտավորական շինարարության խնդիրների շուրջը» ժողովածուի մեջ, էջ 186—200: Մոսկվա, ՀՍԽՀ. Պետհրատ. 1930 թ., 271 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Սոցիալ-դեմոկրատիայի վերաբերմունքը դեպի գյուղացիական շարժումը. 1905, Երկեր, հատ. 8-րդ, էջ 259—269:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մանր-բուրժուական և պրոլետարական սոցիալիզմ: 1905. Երկեր. հատ. VIII, էջ 512—522:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը 1905—1907 թ.



ռուսական ռևոլյուցիայի մեջ: Ընտիր երկեր մեկ հատորի մեջ. հատ. II. էջ 147—293, և հատ. VI, մաս II, էջ 312—345:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ: Ընտիր երկեր երկու հատորում. հատ. I. էջ 557—710:

СТАЛИН И. В. — Третий с'езд перед судом Кавказских «меньшевиков». В сборнике: «Вперед» и «Пролетарий». Первые большевистские газеты 1905 г. Истпарт. выпуск IV. стр. 130—132. Госиздат. 1905. 142 стр.

СТАЛИН И. В. — Вооруженное восстание и наша тактика. (Статья в газете «Борьба пролетариата» № 2 от 15(28) июля 1905 г.) В книге: Л. Берия: — К вопросу об истории большевистских организаций в Закавказье стр. 77—79. Госполитиздат. 1938. изд. 4. 240 стр.

«Борьба пролетариата». (Статья, помещенная в № 22 большевистской газеты «Пролетарий» от 24 (11) октября 1905 г. с

оценкой № 3 газеты «Борьба пролетариата», органа Кавказского союза РСДРП). В книге: Ленин и Сталин, сборник произведений к изучению истории ВКП(б), том I, стр. 332—333. Партиздат. 1937. 932 стр.

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.—Ագրարային հարց: (Հոդվածներ, 1-ին և 2-րդ «Էլվա» թերթում, 1906, № 5, 9, 10 և 11 Ի. Բեսոշվիլի ստորագրությամբ): Հատվածներ Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում. էջ 87—88: Հայկուսհրատ, 1936. 217 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Կաուցկու «Ռուսաստանի ռևոլյուցիայի շարժիչ ուժերը» բրոշյուրի առաջաբանից (փետրվար 1907 թ.) Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում, էջ 88—96: Հայկուսհրատ. 1936, 217 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին, VII—Ստրատեգիան և տակտիկան: Լենինիզմի հարցերը, էջ 72—86:



ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հարցերի շուրջը: III— «Պերմանենտ» ռևոլյուցիայի հարցը: Լենինիզմի հարցերը. էջ 141—143:

1. Ռևոլյուցիայի հետագա վերելքը: 1905 թվականի հոկտեմբերի համառուսաստանյան քաղաքական գործադուլը: Ցարիզմի նահանջը: Ցարական մանիֆեստը: Բանվորների դեպուտատների սովետների երևան գալը:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Քաղաքական գործադուլը և փողոցային կռիվը Մոսկվայում: 1905: Երկեր. հատ. VIII. էջ 411—420:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Համառուսական քաղաքական գործադուլը: 1905: Երկեր հատ. VIII. էջ 470—473:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռևոլյուցիայի առաջին հաղթանակը: 1905: Երկեր. հատ. VIII, էջ 501—509:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալիզմ և անարխիզմ. 1905. Երկեր. հատ. VIII. էջ 581—584:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նիկոլայ, Էրնեստովիչ Բաուման: 1905. Երկեր. հատ. VIII. էջ 510—511:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռևոլյուցիայի ճառուղները,

*ուղղությունը և հեռանկարները:* 1905: *Երկեր. հատ.* VIII. *էջ* 603—604:

СТАЛИН И. В. — Реакция усиливается. (Статья в газете «Борьба пролетариата» № 12 от 15(28) октября 1905 г.). В книге Л. Берия «К вопросу об истории большевистских организаций в Закавказье» стр. 80—84. Госполитиздат. 1938. изд. 4 240. — стр.

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.* — 1905 *թվականի մանիֆեստը հայտարարելու օրը Նաձալադևիի (Թիֆլիսում) բանվորական միտինգում արտասանած ճառից. Հոկտեմբեր.* 1905 *Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում. էջ* 79—80: *Հայկուսհրատ.* 1936. 217 *էջ:*

5. Դեկտեմբերյան զինված ապստամբությունը: Ապստամբության պարտությունը: Ռևոլյուցիայի նահանջը: Առաջին պետական դուման: Պարտիայի IV (միավորիչ) համագումարը:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.*—*Սանկտ-Պետերբուրգի Կոմիտեին կից Մարտական Կոմիտեին:*



1905: *Երկեր. հատ.* VIII. *էջ* 456—463:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.* — *Ռևոլյուցիոն բանակի ջոկատների խնդիրները:* 1905: *Երկեր. հատ.* VIII. *էջ* 464—469:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.* — *Պարտիայի վերակազմության մասին: (Էմիգրացիայից Ռուսաստան վերադառնալուց հետո* «Новая жизнь» *թերթի համար գրած առաջին հոդվածը,* 1905): *Երկեր. հատ.* VIII, *էջ* 532—544:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.* — *Պրոլետարիատը և գյուղացիությունը [Հոդված* «Новая жизнь» *թերթում.* № 11, 25 (12) *նոյեմբերի* 1905 *թ.*]: *Երկեր, հատ.* VIII, *էջ* 545—549:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.* — *Պարտիական կազմակերպությունը և պարտիական գրականությունը: [Հոդված* «Новая жизнь» *թերթում,* № 12, 26 (13) *նոյեմբերի* 1905 *թ.*]: *Երկեր, հատ.* VIII, *էջ* 50—556:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.* — *Մոսկվայի ապստամբության դասերը:* 1906: *Ընտիր երկեր երկու հատորով. հատ.* I, *էջ* 721—728:

ЛЕНИН В. И. — Государственная Дума и

социал - демократическая тактика. 1906 г. Соч. т. IX, стр. 11—19.
ЛЕНИН В. И. — Победа кадетов и задачи рабочей партии. 1906 г. Соч. т. IX, стр. 79—143.
ЛЕНИН В. И. — Современное положение России и тактика рабочей партии. 1906 г. Соч. т. IX, стр. 20—27.
ЛЕНИН В. И. — Русская революция и задачи пролетариата. 1906 г. Соч., т. IX, стр. 28—36.
ЛЕНИН В. И. — Доклад об Об'единительном с'езде РСДРП (Письмо к петербургским рабочим). 1906 г. Соч. т. IX, стр. 175—226.
ЛЕНИН В. И. — К итогам с'езда. 1906 г. Соч. т. IX, стр. 237—239.
СТАЛИН И. В. — Речи на IV (Об'единительном) с'езде РСДРП. 1906 г. В книге: Ленин и Сталин. Сборник произведений к изучению истории ВКП(б), том I, стр. 456—457. Партиздат. 1937. 932 стр.
СТАЛИН И. В. — Из брошюры «Текущий момент и об'единительный с'езд рабочей партии». 1906 г. В книге: Л. Берия. К вопросу об истории



большевистских организаций в Закавказье, стр. 92—96; 105—106. Госполитиздат. 1938, изд. 4-ое 240 стр.
ՍՏԱԼԻՆ Ի. Վ. — Լենինն իբրև ՌԿՊ կազմակերպիչ և առաջնորդ: Հոդված Լենինի ծննդյան 50-ամյակի առթիվ: Ի. Վ. Ստալինի «Լենինի մասին» գրքում. էջ 3—11: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 50 էջ:
Первая конференция РСДРП. Таммерфорс. 25—30 (12—17). декабря 1905 г. (Резолюции). В книге: ВКП(б) в резолюциях и решениях с'ездов, конференций и пленумов ЦК, часть 1, стр. 57—59. Госполитиздат. 1940. 728. — стр.

6. Առաջին պետական դումայի ցրումը: II պետական դումայի հրավիրումը: Պարտիայի V համագումարը: II պետական դումայի ցրումը: Ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտության պատճառները:

ԼԵՆԻՆ Վ. Ի. — Դումայի արձակումը և պրոլետարիատի խնդիրները: 1906: Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. II. էջ 377—400:
ЛЕНИН В. И. — Кризис меньшевизма. 1906 г. Соч. т. X, стр. 178—195.

ЛЕНИН В. И. — Вторая Дума и вторая волна революции 1907 г. Соч. т. X. стр. 368—371.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Բոյկոտի մասին: 1906: Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ. II, էջ 406—415:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Բոյկոտի դեմ (սոցիալ-դեմոկրատ հրապարակախոսի գիտողությունները): 1907: Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ. II, էջ 430—446 (այս հրատարակության մեջ զետեղված են միայն 5,6 և 7-րդ հոդվածները. լրիվ տե՛ս Երկեր, հատ. XII. էջ 13—42. ռուս. հրատ.):

ԼԵՆԻՆ Վ. Ի.— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ: Հանրամատչելի զրույցի փորձ մարքսիստական ստրատեգիայի և տակտիկայի մասին: 1920. IV.— Բանվորական շարժման ներսում ինչպիսի թշնամիների հետ պայքարելով աճեց, ամրապնդվեց և կոփվեց բոլշևիզմը: VII.— Արդյոք պե՞տք է մասնակցել բուրժուական պառլամենտներում: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938, էջ 143:

ЛЕНИН В. И. — V съезд РСДРП. 13 мая



(30 апреля,—1 июня (19 мая) 1907 г. 6. Доклад об отношении к буржуазным партиям 25 (12) мая. 7. Заключительное слово по докладу об отношении к буржуазным партиям 27 (14 мая). Соч. т. XI. стр. 245—259.

ЛЕНИН В. И. — Сила и слабость русской революции. 1907. Соч. т. XI. стр. 183—189.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռևոլյուցիայի դասեր: 1910: Ընտիր երկեր երկու հատորով. հատ. I. էջ 738—744:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Զեկուցում 1905 թվականի ռևոլյուցիայի մասին: Լենին և Ստալին.— Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 193—213: Կուսհրատ. 1937. 1187 էջ:

СТАЛИН И. В. — Две схватки. (Брошюра, изданная Кавказским союзным комитетом РСДРП в январе 1906 г.). В книге: Л. Берия. — К вопросу об истории большевистских организаций в Закавказье. стр. 96—98. Госполитиздат. 1938 г. изд 4-ое. 240 стр.

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— [illegible] Լենինի համագումարը ([illegible]): Քաղ.

գրակ. պետ. հրատ. 1940։

ԲԵՐԻԱ Լ.— Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը։ Գլ. II. Անդրկովկասի՝ ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության շուրջը։ (1905—1907 թ. թ.). էջ 55—117. ՀԿ(բ)Պ ԿԿ հրատ. 1936. հատ. 2-րդ, 217 էջ։

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի համառոտ կենսագրությունը։ II մաս։ (Համ. Կ(բ)Պ ԿԿ-ին կից Մարքսի-Էնգելսի-Լենինի ինստիտուտ)։ Քաղ. գրակ. Պետական հրատ. 1940։

(Շարունակելի)

---



## ԳԻՏԱ-ԼՈՒՍԱՎՈՐԱԿԱՆ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԹԵՄԱՏԻԿԱՆ

1. Կյանքի ծագումը։
2. Մարդու ծագումը։
3. Տիեզերքի կառուցվածքը։
4. Բնության արտասովոր երևույթները։
5. Մարդիկ ինչու՞ են հիվանդանում և ինչու չի կարելի հավատալ հեքիմներին։
6. Քունը և երազը։
7. Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։
8. Ընտանի կենդանիների և կուլտուրական բույսերի ծագումը։
9. Հոգի կա՞ թե ոչ։
10. Ինչից կախում ունի եղանակը։

---

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ!

ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ (ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄ, ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ)։ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԿՏՊԱԳՐՎԵՆ ՄԵՐ ԲԼՈԿՆՈՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*



Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

*ՎՖ 00038* *Պատվ. 1046, տիրաժ 5000*

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան